Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 10 (112)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1941

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 10 (112)



«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1941

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՓՈԽԱՌՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԴԵՐԸ

«Կապիտալիստական երկրներն իրենց ծանր ինդուստրիան սովորաբար ստեղծել են ի հաշիվ արտաքին միջոցների ներհոսման, ի հաշիվ գաղութների կողոպտման, ի հաշիվ հաղթված ժողովուրդներից վերցրած կոնտրիբուցիաների, ի հաշիվ արտաքին փոխառությունների: Սովետների երկիրն սկզբունքով չէր կարող դիմել ինդուստրացման համար միջոցներ ստանալու այնպիսի կեղտոտ աղբյուրների, ինչպիսիք են գաղութային կամ հաղթված ժողովուրդների կողոպտումը... Պետք էր միջոցներ գտնել երկրի ՆԵՐՍՈՒՄ:

Եվ ՍՍՌՄ-ում այդպիսի միջոցներ գտնվեցին: ՍՍՌՄ-ում գտնվեցին կու-

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՓՈԽԱՌՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԴԵՐԸ

«Կապիտալիստական երկրներն իրենց ծանր ինդուստրիան սովորաբար ստեղծել են ի հաշիվ արտաքին միջոցների ներհոսման, ի հաշիվ գաղութների կողոպտման, ի հաշիվ հաղթված ժողովուրդներից վերցրած կոնտրիբուցիաների, ի հաշիվ արտաքին փոխառությունների: Սովետների երկիրն սկզբունքով չէր կարող դիմել ինդուստրացման համար միջոցներ ստանալու այնպիսի կեղտոտ աղբյուրների, ինչպիսիք են գաղութային կամ հաղթված ժողովուրդների կողոպտումը... Պետք էր միջոցներ գտնել երկրի ՆԵՐՍՈՒՄ:

Եվ ՍՍՌՄ-ում այդպիսի միջոցներ գտնվեցին: ՍՍՌՄ-ում գտնվեցին կու-

տակման այնպիսի աղբյուրներ, որպիսին չգիտե կապիտալիստական ոչ մի պետություն»:

*(ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթաց, էջ 379)*

*Լենինի-Ստալինի փառապանծ պարտիայի և ժողովուրդների հանճարեղ առաջնորդ ընկեր Ստալինի ղեկավարությամբ, պատմական ամենակարճ ժամանակամիջոցում Սովետական Միությունը, ազատ սոցիալիստական աշխատանքի երկիրը դարձավ ինդուստրիալ հզոր տերություն, աշխարհիս ամենաառաջավոր և խոշոր գյուղատնտեսության երկիր, առաջավոր կուլտուրայի երկիր: Մեր երկրում անվերադարձորեն ոչնչացվել են շահագործող դասակարգերը և մարդը մարդու կողմից շահագործվելու բոլոր պատճառները:*

*Միմիայն ստալինյան 3-րդ հնգամյակի 3 տարիների ընթացքում ՍՍՌՄ-ում գործի են դրվել 2955 նոր ֆաբրիկա, գործարան, հանքահոր, էլեկտրոկայան և այլ ձեռնարկություններ, չհաշված տեղական նշանակություն ունեցող ռայոնական արդյունաբերությունը:*

*Սովետական Հայաստանում միայն ստալինյան 2 հնգամյակների ընթացքում կառուցվել է 43 խոշոր արդյունաբերա-*



*կան ձեռնարկություն (այդ թվում՝ Քանաքեռգէսը, Ձորագէսը, Լենգէսը, ՍԿ «Սովպրենը», Լենինականի տեքստիլ կոմբինատն ու մսի կոմբինատը և այլն):*

*ՍՍՌՄ արդյունաբերության արտադրանքը 1932 թ. 95,5 միլիարդ ռուբլուց 1940 թ. հասավ մինչև 137,5 միլիարդ ռուբլու: Այդ նույն տարիներին ժողովրդական տնտեսության մեջ կատարված կապիտալ ներդրումների ծավալը կազմում էր 108 միլիարդ ռուբլի:*

*Աշխարհում առաջին տեղը գրավեց նաև մեր սոցիալիստական հողագործությունը: Կոլխոզներն ու սովխոզները զինված են մեծ քանակությամբ ամենակատարելագործված գյուղատնտեսական մեքենաներով: 1940 թվին ՍՍՌՄ-ի կոլխոզային ու սովխոզային դաշտերում աշխատում էին մինչև 523 հազար տրակտորներ և 182 հազար կոմբայններ, 100 հազարավոր ավտոմեքենաներ և այլ բարդ գյուղատնտեսական մեքենաներ ու գործիքներ: Բավական է ասել, որ մեր երկրում կոլխոզային ու սովխոզային դաշտերում աշխատում են ավելի շատ կոմբայններ, քան բոլոր կապիտալիստական երկրներում միասին վերցրած: Սովետական Հայաստանի կոլխոզային ու սովխոզային դաշտերում աշ-*

խատում են մոտ 1500 տրակտորներ, 247 կոմբայն, 343 բարդ կալսիչ, 791 բեռնատար ավտոմեքենա և բազմաթիվ այլ գյուղատնտեսական մեքենաներ ու գործիքներ:

Աճել է հացահատիկի, շաքարի ճակնդեղի, արևածաղկի, կարտոֆիլի արտադրանքը: Հացահատիկային կուլտուրաների բերքը ՍՍՌՄ-ում 1940 թ. կազմեց մոտավորապես 7,3 միլիարդ փութ: 1940 թվին կոլխոզներում աճեց անասունների գլխաքանակը՝ խոշոր եղջերավոր անասուններինը 12 տոկոսով, խոզերինը՝ 18 տոկոսով, ոչխարներինը՝ 28 տոկոսով և այծերինը՝ 34 տոկոսով:

Հայաստանի կոլխոզային ապրանքային ֆերմաներում անասունների գլխաքանակը 1939 թվի հունվարի մեկից մինչև 1940 թ. հունվարի մեկն աճել էր հետևյալ կերպ. ձիերինը՝ 33 տոկոսով, խոշոր եղջերավոր անասուններինը՝ 18,7 տոկոսով, մանր եղջերավոր անասուններինը՝ 34,3 տոկոսով և խոզերինը՝ 5,8 տոկոսով: Մեզ մոտ չկա ոչ մի կոլխոզ, որը չունենա անասնապահական ֆերմա: ՍՍՌՄ-ում կոլխոզների դրամական եկամուտներն աճել են 1937 թվի 14,2 միլիարդ ռուբլուց դեռ 1939 թվին հասնելով 18,3 միլիարդ ռուբլու:

Մեր երկիրը հանդիսանում է առաջավոր



կուլտուրայի երկիր: Վիթխարի չափով բարձրացել է մասսաների կուլտուրական մակարդակը: Աշակերտության թիվը տարրական ու միջնակարգ դպրոցներում 1939 թ. հասել է 34,1 միլիոն մարդու, այն ժամանակ, երբ ցարական Ռուսաստանում 1914 թ. այդ նույն տիպի դպրոցներում սովորում էին միայն 8,1 միլիոն երեխաներ և պատանիներ: Բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում են մոտ 600.000 մարդ: Սոցիալ-կուլտուրական միջոցառումների վրա 1940 թ. ծախսվել է 41,7 միլիարդ ռուբլի, 1938 թվի 35,2 միլիարդ ռուբլու դիմաց:

Հայաստանի 1154 մասսայական դպրոցներում 1940—41 թ. թ. ուսումնական տարում սովորում են 326,617 հոգի: Միայն լրիվ միջնակարգ դպրոցներում 1940 թ. սովորել են 192,207 աշակերտ: Բացի դրանից, 20.000 հոգի սովորում են մեծահասակների միջնակարգ դպրոցներում, ուսումնարաններում և տեխնիկումներում: Հայաստանում այժմ գոյություն ունի 10 ԲՈՒՀ, որտեղ 1939—40 ուստարում սովորել են 7426 մարդուց ավելի, այն ժամանակ, երբ դաշնակցական տխրահռչակ կառավարության օ-

րոք՝ 1918—1919 թ. թ. Հայաստանում գոյություն ուներ միայն 156 դպրոց, 18.600 աշակերտով։

Որտեղի՞ց է սովետական պետությունն ստեղծել ու ստեղծում այդ միջոցները, ո՞րո՞նք են այն աղբյուրները, որոնցով ֆինանսավորվում են երկրի տնտեսական, կուլտուրական և պաշտպանական շինարարությունը, միջոցներ, որոնք անհրաժեշտ են նրա համար, որպեսզի տնտեսական տեսակետից նույնպես անցնենք գլխավոր կապիտալիստական երկրներից։

Այդ միջոցներն ամենից առաջ գոյանում են սոցիալիստական ձեռնարկությունների (ֆաբրիկաների, գործարանների, տրանսպորտի, գյուղատնտեսության, առևտրի) կուտակումներից, որոնք սովետական պետության եկամուտների հիմքն են հանդիսանում, կազմելով պետական բյուջեի եկամուտների 90 տոկոսը։ Բնակչությունից գանձված հարկերը մեր բյուջեում աննշան տեղ են գրավում։

Սոցիալիստական շինարարության ֆինանսավորման համար որպես լրացուցիչ աղ-



բյուր, սակայն դեր չեն խաղում նաև այն միջոցները, որոնք բնակչությունը փոխ է տալիս իր պետությանը պետական փոխառությունների միջոցով։

## ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՓՈԽԱՌՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Ինչո՞վ են տարբերվում մեր սովետական փոխառությունները կապիտալիստական պետությունների փոխառություններից։

Կապիտալիզմի պայմաններում պետական փոխառությունները, ինչպես նաև հարկերը, հանդիսանում են աշխատավորության լրացուցիչ շահագործման մի միջոց, շահագործման մի ձև։ Բուրժուական պետությունը փոխառությունների միջոցով միջոցների մոբիլիզացիա է կատարում ոչ թե երկրի տնտեսական կարիքների համար, այլ գլխավորապես ռազմական և այլ անարտադրողական նպատակների համար, իմպերիալիստական պատերազմներ նախապատրաստելու և վարելու համար, աշխատավորական մասսաների ռևոլյուցիոն շարժումները ճնշելու, շահագործման ծրիակեր ապարատը պահպանելու համար։

Միջոցների նման անարտադրական օգտագործումը բացառում է այդ միջոցների վերականգնման հնարավորությունը, որի հետևանքով կապիտալիստական երկրների բյուջեներում խրոնիկական դեֆիցիտներ են առաջանում և գոյանում են պետական խոշոր պարտքեր։ Բյուջետային այդ դեֆիցիտները ծածկելու համար, բուրժուական կառավարությունը նորանոր փոխառություններ է բաց թողնում, ինչպես և ավելացնում է հարկերն ու տուրքերը, որոնց ամբողջ ծանրությունն ընկնում է աշխատավորական մասսաների վրա։

Կապիտալիստական երկրների պարտքն արտաքին և ներքին փոխառությունների գըծով է՛լ ավելի աճում է իմպերիալիստական պատերազմների ժամանակաշրջանում։

Իմպերիալիստական պատերազմների ազդեցությունը պետական պարտքի աճման վրա հատկապես ցայտուն կերպով հանդես եկավ 1914—1918 թ. թ. առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմի ժամանակ։ Այդ պատերազմի տարիներին բոլոր երկրների պետական պարտքն ավելա-



ցավ ավելի քան 5 անգամ։

Անգլիայի պետական պարտքն այդ ժամանակաշրջանում աճեց 10 անգամ, Ֆրանսիայինը՝ 14 անգամ, Իտալիայինը՝ 15 անգամ, Ամերիկայի Միացյալ Նահանգներինը՝ 18 անգամ։

Պետական փոխառությունների է՛լ ավելի ուժեղ թողարկում, պետական պարտքի հըսկայական աճ առաջ բերեց այժմս վարվող երկրորդ համաշխարհային իմպերիալիստական պատերազմը։

Վերցնենք օրինակի համար Անգլիայի բյուջեն։ 1939—40 թ. թ. բյուջետային տարում այդ բյուջեն կատարվել էր ըստ եկամուտների՝ 1049 միլիոն ֆունտ ստեռլինգ գումարով և ըստ ծախսերի՝ 1817 միլիոն ֆունտ ստեռլինգով, այսինքն՝ 768 միլիոն ֆունտ ստեռլինգ դեֆիցիտով։ 1049 միլիոն ֆունտ ստեռլինգ եկամուտներից 1017 միլիոն ֆունտը կամ համարյա 97 տոկոսը գոյացել է հարկերից։

Բյուջետային դեֆիցիտը ծածկելու համար անգլիական կառավարությունը 1940 թ. բաց թողեց ռազմական փոխառություն 300 միլիոն ֆունտ ստեռլինգ գումարով՝ տարեկան 3 տոկոսով։

Անգլիայի 1940—41 թ. թ. բյուջեն ամբողջովին պատերազմի բյուջե է, նա կազմ-

ված է 1432 միլիոն ֆունտ ստեռլինգ դեֆիցիտով։

Ֆրանսիայի 1940 թ. բյուջեն, ըստ եկամուտների կազմում էր 80 միլիարդ ֆրանկ, իսկ ըստ ծախսերի՝ 335 միլիարդ ֆրանկ։ Եկամուտների 66 միլիարդը կազմում էին հարկերը։ Ֆրանսիայի պետական պարտքը կազմում էր մոտ 450 միլիարդ ֆրանկ, իսկ տարվա վերջին այն հասավ 770 միլիարդի։

Ճապոնիայի բյուջեն 1939—40 թ.թ. կազմում էր ըստ եկամուտների 3076 միլիոն իեն, իսկ ըստ ծախսերի՝ 9410 միլիոն իեն, դեֆիցիտը հավասար է 6334 միլիոն իենի։ Ճապոնիայի պետական պարտքը 1939—40 տարվա վերջին հասավ 23 միլիարդ իենի։

Ո՞ւմ են ձեռնտու փոխառությունները կապիտալիստական երկրներում։ Դրանից շահում են միայն իրենք՝ կապիտալիստները, հատկապես այսպես կոչված՝ ռանտյեները, որոնք իրենց կապիտալները հանձնում են բանկերին, ստանում են մեծ տոկոսներ և հարստանում են կտրոններ խուզելով։ Նրանց համար պետական փոխառությունների պարտատոմսերի գնումը ոչ այլ ինչ է, եթե ոչ իրենց կապիտալների շահավետ տեղավորում։ Վաշխառու կապիտա-



լիստները գնելով պետական փոխառությունների պարտատոմսերը, վարկավորում են իրենց պետությանը, իսկ պետությունն իր փոխարեն մասսայական հարկավճարողին, այսինքն՝ ժողովրդական մասսաներին է հարկադրում վճարել վաշխառու կապիտալիստների պարտքերն ու տոկոսները։

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՓՈԽԱՌՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Սոցիալիստական պետության փոխառությունները արմատապես տարբերվում են կապիտալիստական պետությունների փոխառություններից։ Սովետական պետության ֆինանսական սիստեմում փոխառություններին խոշոր դեր է պատկանում։ Նրանք պետական բյուջեի եկամուտների աղբյուրներից մեկն են հանդիսանում։ Պետական փոխառությունների թողարկումը ՍՍՌՄ-ում բյուջետային դեֆիցիտի արդյունք չի հանդիսանում, ինչպես այդ գոյություն ունի կապիտալիստական երկրներում։ Ընդհակառակը, մեր պետական բյուջեի եկամտային մասը տարեց-տարի գերակշռում է նրա ծախսային մասին. օրինակ ՍՍՌՄ Գերագույն Սովետի 8-րդ սեսիայի կողմից հաստատված

ված է 1432 միլիոն ֆունտ ստերլինգ դեֆիցիտով։

Ֆրանսիայի 1940 թ. բյուջեն, ըստ եկամուտների կազմում էր 80 միլիարդ ֆրանկ, իսկ ըստ ծախսերի՝ 335 միլիարդ ֆրանկ։ Եկամուտների 66 միլիարդը կազմում էին հարկերը։ Ֆրանսիայի պետական պարտքը կազմում էր մոտ 450 միլիարդ ֆրանկ, իսկ տարվա վերջին այն հասավ 770 միլիարդի։

Ճապոնիայի բյուջեն 1939—40 թ. թ. կազմում էր ըստ եկամուտների 3076 միլիոն իեն, իսկ ըստ ծախսերի՝ 9410 միլիոն իեն, դեֆիցիտը հավասար է 6334 միլիոն իենի։ Ճապոնիայի պետական պարտքը 1939—40 տարվա վերջին հասավ 23 միլիարդ իենի։

Ո՞ւմն են ձեռնտու փոխառությունները կապիտալիստական երկրներում։ Դրանից շահում են միայն իրենք՝ կապիտալիստները, հատկապես այսպես կոչված՝ ռանտյերները, որոնք իրենց կապիտալները հանձնում են բանկերին, ստանում են մեծ տոկոսներ և հարստանում են կտրոններ խուզելով։ Նրանց համար պետական փոխառությունների պարտատոմսերի գնումը ոչ այլ ինչ է, եթե ոչ իրենց կապիտալների շահավետ տեղավորում։ Վաշխառու կապիտա-



լիստները գնելով պետական փոխառությունների պարտատոմսերը, վարկավորում են իրենց պետությանը, իսկ պետությունն իր փոխարեն մասսայական հարկավճարողին, այսինքն՝ ժողովրդական մասսաներին է հարկադրում վճարել վաշխառու կապիտալիստների պարտքերն ու տոկոսները։

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՓՈԽԱՌՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Սոցիալիստական պետության փոխառությունները արմատապես տարբերվում են կապիտալիստական պետությունների փոխառություններից։ Սովետական պետության ֆինանսական սիստեմում փոխառություններին խոշոր դեր է պատկանում։ Նրանք պետական բյուջեի եկամուտների աղբյուրներից մեկն են հանդիսանում։ Պետական փոխառությունների թողարկումը ՍՍՌՄ-ում բյուջետային դեֆիցիտի արդյունք չի հանդիսանում, ինչպես այդ գոյություն ունի կապիտալիստական երկրներում։ Ընդհակառակը, մեր պետական բյուջեի եկամտային մասը տարեց-տարի գերակշռում է նրա ծախսային մասին. օրինակ ՍՍՌՄ Գերագույն Սովետի 8-րդ սեսիայի կողմից հաստատված

1941 թ. պետական բյուջեի եկամտային մասը գերազանցում է նրա ծախսային մասից 0,8 միլիարդ ռուբլով։

Կապիտալիստական երկրների պետական փոխառությունների պարազիտային, շահագործող բնույթին հակառակ, սովետական պետական փոխառություններն ունեն խոր արտադրողական բնույթ։ Փոխառությունների գծով ներգրավված միջոցները մեզ մոտ օգտագործվում են սոցիալիստական շինարարության ֆինանսավորման գործի համար, նյութական նոր արժեքներ ստեղծելու համար, երկրի պաշտպանական հզորությունն ամրապնդելու և աշխատավորների կուլտուրական մակարդակի բարձրացման համար։

Սովետական պետական փոխառությունների արտադրողական բնույթից բխում է նրա մյուս առանձնահատկությունը, այն է՝ պարտքի մարումը և պետական փոխառությունների պարտատոմս պահողներին վճարվող եկամուտների տոկոսները չեն պահանջում հարկերի ավելացում, ինչպես այդ կատարվում է կապիտալիստական երկրներում։ Սովետական պետության փոխառությունների գծով ներգրավված միջոցներն օգտագործվում են սոցիալիստական շինարարության ֆինանսավորման համար, դրանով իսկ աճում են ժողովրդական տնտեսության կուտակումները։



Սովետական պետական փոխառությունները հսկայական ժողովրդականություն են վայելում մեր ամենալայն մասսաների մեջ։ Նրանք իսկական ժողովրդական փոխառություններ են։

Միահամուռ կերպով բաժնեգրվելով փոխառությանը, սովետական ժողովուրդը կրկին ու կրկին անգամ իր անսահման սերն ու նվիրվածությունն է ցուցաբերում Լենինի-Ստալինի մեծ պարտիային և սովետական պետությանը։

Չտեսնված մեծ խանդավառությամբ իրագործվեց 1940 թվին թողարկված 3-րդ հնգամյակի (3-րդ տարվա բաժնի) փոխառությունը։ Մոտավորապես 60 միլիոն աշխատավորներ բաժնեգրվեցին այդ փոխառությանը 9 միլիարդ 433 միլիոն ռուբլի գումարով, մեկ միլիարդ 433 միլիոն ռուբլով ավելի թողարկված գումարից։ Իսկ ընդամենը 10 տարի առաջ, երբ բաց թողնվեց «Հնգամյակը չորս տարում» փոխառությունը, կար ընդամենը 12 միլիոն բաժնեգրվող, մեկ միլիարդից մի փոքր ավելի բաժնեգրության գումարով։ Հայաստանում երրորդ հնգամյակի երրորդ տարվա փոխառությունն իրաց-

վեց 52 միլիոն 360 հազար ռուբլի գումարով, փոխառությանը բաժանեգրվողների թիվը գերազանցեց 360.000 մարդուց։

Փոխառությունների իրացման գումարների անընդհատ աճը հիմնված է երկրի ժողովրդական եկամուտի, բանվորների և ծառայողների եկամուտի, կոլտնտեսականների եկամուտի աճման վրա։ Երրորդ հնգամյակի երեք տարվա ընթացքում ժողովրդական եկամուտն աճել է 30%-ով՝ 1937 թվի 96 միլիարդ ռուբլուց 1940 թ. հասնելով 125,5 միլիարդ ռուբլու։ Աշխատավարձի ֆոնդերը տնտեսության՝ երրորդ հնգամյակով նախատեսված ճյուղերում՝ այդ նույն ժամանակաընթացքում 82,2 միլիարդ ռուբլուց հասել են 123,7 միլիարդ ռուբլու, կամ աճել են մեկ ու կես անգամ, իսկ կոլխոզների եկամուտները 1937 թվի 14,2 միլիարդ ռուբլուց 1939 թվին հասել են 18,3 միլիարդ ռուբլու այսինքն աճել են համարյա 30 տոկոսով։

Այդ նույն ժամանակաշրջանում բանվոր-ծառայողների և քաղաքային այլ բնակչության բաժնեգրությունը 4.186 միլիոնից հասել է 7.830 միլիոն ռուբլու։ Աճը կազմում է մոտ 90%, իսկ Հայաստանում 19,1 միլիոնից հասել է 41,4 միլիոնի, աճը կազմում է 216,7%։



Ուժեղ տեմպով է աճում փոխառության իրացումը նաև գյուղում։ Կոլխոզնիկներն ու մենատնտես գյուղացիները 1937 թվին ձեռք էին բերել 746 միլիոն ռուբլու պարտատոմս, իսկ 1940 թվին՝ 1.603 միլիոն ռուբլու պարտատոմս։ Աճը կազմում է 115%։ Հայաստանում փոխառության իրացման աճը գյուղում 1932 թ. 4,7 միլիոնից 1940 թվին հասել է 10,8 միլիոնի։ Աճը կազմում է 229%։

Ստալինյան հնգամյակների տարիներին մեր երկրի աշխատավորները 45,6 միլիարդ ռուբլու փոխառություն տվին պետությանը։ Այդ թվում, առաջին հնգամյակի ընթացքում՝ 5,9 միլիարդ ռուբլի, երկրորդ հնգամյակի ընթացքում 19 միլիարդ ռուբլի և երրորդ հնգամյակի երեք տարիների ընթացքում՝ 20,7 միլիարդ ռուբլի։ Այդ նույն ժամանակաշրջանում կապիտալ ներդրումները կազմել են՝ առաջին հնգամյակում 51 միլիարդ ռուբլի, երկրորդ հնգամյակում 115 միլիարդ ռուբլի և երրորդ հնգամյակի 3 տարիների ընթացքում՝ 108 միլիարդ ռուբլի։ Հետևապես, փոխառություններից ստացված միջոցները կազմել են կապիտալ ներդրումների ամբողջ գումարի ավելի քան 11 տոկոսը՝ առաջին հնգամյակում, մոտավորապես 17%-ը՝ երկրորդ հնգամյակում և ավելի քան 19 տոկոսը՝

երրորդ հնգամյակի անցած տարիների ընթացքում։ Այս թվերը ցույց են տալիս մեր պետական փոխառությունների հսկայական դերը սոցիալիստական շինարարության զարգացման գործում։

Հայաստանի աշխատավորությունը 1933—1940 թ. թ. ընթացքում 207,6 միլիոն ռուբլու փոխառությունների պարտատոմսեր է ձեռք բերել։

Վերջին տարիներին կոլխոզային գյուղում լայն շարժում ծավալվեց փոխառության բաժնեգրության գումարները ժամկետից առաջ մուծելու համար։ Այդ գործում իրենց արժանի տեղը գրավեցին Հայաստանի կոլխոզնիկները, որոնք անցյալ տարի հենց բաժնեգրության առաջին ամիսներին ժամկետից առաջ լրիվ չափով վճարեցին բաժնեգրության գումարները։

Սովետական փոխառությունների ժողովրդականությունը բացատրվում է նաև նրանով, որ նրանք զգալի եկամուտներ են բերում պարտատոմս պահողներին։ Ստալինյան հնգամյակների տարիների ընթացքում աշխատավորները ստացել են 7,1 միլիարդ ռուբլու շահումներ և տոկոսներ (ներառյալ մարած պարտատոմսերի արժեքը), միայն 1940 թվականին ավելի քան 900 մի-



լիոն ռուբլի։ Հայաստանի աշխատավորությունը 1934 թ. մինչև 1940 թվականը ներառյալ ստացել է 27,6 միլիոն ռուբլու շահումներ և տոկոսներ՝ ներառյալ պարտատոմսի արժեքը։

Սովետական պետությունն ամենավճարունակ պետությունն է աշխարհում։ Նա ճշտապահորեն է կատարում պարտատոմսատերերի հանդեպ իր ունեցած պարտավորությունները։ Սովետական կառավարությունը ձեռք է առնում բոլոր միջոցներ, որպեսզի յուրաքանչյուր պարտատոմս պահող ժամանակին և լրիվ ստանա փոխառությունից իրեն հասնող եկամուտը։

Սովետական կառավարության լենինյան-ստալինյան ազգային քաղաքականությունն իր արտահայտությունն է գտնում նաև փոխառություններից ստացվող միջոցների վերաբաշխման մեջ։ Այդ միջոցների զգալի մասը հանձնվում է միութենական ռեսպուբլիկաների պետական բյուջեներին, ինչպես նաև քաղաքների, շրջանների և գյուղսովետների բյուջեներին՝ տեղական տնտեսական ու կուլտուրական շինարարության համար։ Քաղաքային, շրջանային և գյուղական բյուջեներին է հանձնվում բանվորների և ծառայողների բաժնեգրությունից ստացվող մի-

ջոցների 15%-ը և գյուղացիների բաժնեգրությունից ստացվող գումարների 90 տոկոսը։

ՍՍՌՄ-ի Գերագույն Սովետի 8-րդ սեսիան ՍՍՌ Միության 1941 թ. պետական բյուջեն հաստատեց ըստ եկամուտների 216,8 միլիարդ ռուբլի և ըստ ծախսերի՝ 216 միլիարդ ռուբլի։ Այդ գումարից ավելի քան 121,1 միլիարդ ռուբլին հատկացվում է ժողովրդական տնտեսությանը և սոցիալ-կուլտուրական շինարարությանը։ 70,9 միլիարդ ռուբլի հատկացված է երկրի պաշտպանությանը։

1941 թ. պետական բյուջեում նախատեսված է նաև 10,475 միլիոն ռուբլի մուտք՝ բաժնեգրության գծով բնակչության մեջ իրացվելիք փոխառություններից։ Այսպիսով, պետական փոխառությունները ստալինյան երրորդ հնգամյակի չորրորդ տարում խոշոր չափով կնպաստեն 1941 թ. ժողտնտեսության պլանների կատարմանը, որով էլ ավելի կբարձրանա աշխատավորների նյութական և կուլտուրական մակարդակը, էլ ավելի կամրապնդվի մեր սոցիալիստական հայրենիքի պաշտպանական հզորությունը։



# ԽՆԱՅՈՂԱԿԱՆ ԴՐԱՄԱՐԿՂՆԵՐԻՆ ՀԱՆՁՆՎՈՂ ԱՎԱՆԴՆԵՐԸ

ՍՍՌՄ-ում պետական աշխատավորական խնայողական դրամարկղները կազմակերպվել են 1922 թվականի դեկտեմբերից։ Ներկայումս երկրում կան ավելի քան 40 հազար խնայողական դրամարկղներ։

Սովետական խնայողական դրամարկղները սկզբունքորեն տարբերվում են կապիտալիստական երկրների խնայողական դրամարկղներից։

Աշխատավորների ճնշող մեծամասնությունը կապիտալիստական երկրներում խնայողություններ անելու հնարավորություն չունի, որովհետև ստացած աշխատավարձը չի բավարարում նույնիսկ կիսաքաղց գոյություն պահպանելու համար։

Կապիտալիստական երկրներում խնայողական դրամարկղներում պահվող ավանդների հիմնական մասը պատկանում է առևտրականներին, կուլակներին, հոգևորականությանը, չինովնիկությանը և այլն։

Բոլորովին այլ բնույթ են կրում խնայողությունները ՍՍՌՄ-ում։ Դրանք իսկական ժողովրդական խնայողություններ են, որովհետև խնայողական դրամարկղներում կու-

տակվող ավանդների գումարները ամբողջովին պատկանում են աշխատավորներին։

Ստալինյան մեծ Կոնստիտուցիան բոլոր քաղաքացիներին ապահովում է աշխատանքի իրավունք, հանգստյան իրավունք, կրթության իրավունք, իսկ ծերության, հիվանդության և աշխատունակությունը կորցնելու դեպքում նյութական ապահովություն։ Մեր աշխատավորների համար վաղվա օրը ապահովված է։

Սոցիալիստական շինարարության բուռն զարգացումը Ստալինյան հնգամյակների տարիներին և աճող ստախանովյան շարժումը արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ ապահովեցին աշխատավորների նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի անընդհատ վերելքը։ «Երկրորդ հնգամյակի տարիներին զգալիորեն բարձրացավ կոլխոզնիկների ունևորությունը։ Այդ երևում է կոլխոզների և կոլխոզնիկների եկամուտների աճից։ Այսպես, կոլխոզային դրամական եկամուտները երկրորդ հնգամյակի տարիներին 4,6 միլիարդ ռուբլուց հասան 14,2 միլիարդ ռուբլու, այսինքն ավելացան ավելի քան երեք անգամ» (Մոլոտով «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման Երրորդ Հնգամյա պլանը», զե-



կուցում պարտիական 18-րդ համագումարում, էջ 13)։

Սոցիալիստական շինարարության բուռն զարգացումը, գործազրկության բացակայությունը, աշխատավորների նյութական բարեկեցության անընդհատ վերելքը ամուր հիմք են ստեղծում մեր երկրի աշխատավորության դրամական հնարավորությունների աճման համար։ Այդ խնայողության աճման փայլուն ցուցանիշն է հանդիսանում ավանդների ավելանալը խնայողական դրամարկղներում։

«Բնակչության բարեկեցության վերելքի ցուցանիշներից մեկը կարող է հանդիսանալ այնպիսի մի փաստ, ինչպիսին է խնայդրամարկղներում ավանդների ավելանալը 1 միլիարդից մինչև 4,5 միլիարդ ռուբլու» —ասել է ընկեր Մոլոտովը պարտիական 18-րդ համագումարին տրված իր զեկուցման մեջ։ 1941 թվականի սկզբին բնակչության ավանդների գումարը խնայողական դրամարկղներում գերազանցեց 7 միլիարդ ռուբլուց։ Ավելի քան 17,5 միլիոն բանվորներ, ծառայողներ, կոլտնտեսականներ խնայողական դրամարկղների ավանդատուներ են հանդիսանում։

Խնայողական դրամարկղների ավանդա-

տուները օգտվում են մի շարք իրավունքներից և արտոնություններից։ Ավանդատուն իրավունք ունի իր ավանդն ստանալ ցանկացած ժամանակ, մաս-մաս կամ ամբողջությամբ, առանց գումարի սահմանափակման։

Ավանդների անվթարությունը խնայողական դրամարկղներում երաշխավորվում է ՍՍՌՄ կառավարության կողմից։ Խնայողական դրամարկղները խստորեն պահպանում են ավանդի գաղտնիքը։ Ավանդները խնայողական դրամարկղում անձեռնմխելի են։ Ավանդներն ինչպես և նրանցից ստացվող եկամուտները հարկման չեն ենթարկվում։

Ավանդատուն իրավունք ունի լիազորելու ուրիշներին իր ավանդից դրամ ստանալու։

Ավանդատուին իրավունք է վերապահված կտակել ավանդը ցանկացած անձանց կամ կազմակերպություններին։

Ավանդատուն իրավունք ունի իր ավանդը փոխադրել մեկ խնայողական դրամարկղից մեկ ուրիշը։

Խնայողական դրամարկղները ավանդատուներին եկամուտ են վճարում՝ սովորական ավանդների համար տարեկան 3 տոկոսի չափով, իսկ ժամկետային ավանդների հա-



մար, որոնք մուծվում են խնայողական դրամարկղը ոչ պակաս 6 ամիս ժամանակով, տարեկան 5 տոկոսի չափով։

Ավանդատուները պահ տալով իրենց դրամական խնայողությունները խնայողական դրամարկղներում, զգալի եկամուտներ են ստանում։ Երկրորդ հնգամյակի տարիներին և Երրորդ հնգամյակի առաջին երկու տարում մեր երկրի բնակչությունը ավանդներով եկամուտ է ստացել մոտ մեկ միլիարդ ռուբլի գումար։ Հայաստանում 1934—1940 թվականներին ավանդատուներին եկամուտ է վճարվել 3,7 միլիոն ռուբլի։

Խնայողական դրամարկղները մեծ աշխատանք են կատարում նաև պետփոխառությունների պարտատոմս պահողներին սպասարկելու ուղղությամբ։ Քաղաքացիները նրանց պահ են տալիս իրենց պարտատոմսերը, որի դիմաց ստանում են փոխատվություններ, շահումները և մարված պարտատոմսերի արժեքը։

Խնայողական դրամարկղները տալիս և վճարում են ակկրեդիտիվներ։ Ակկրեդիտիվ-

*ներ տրվում են բոլոր քաղաքացիներին, անկախ նրանից թե քաղաքացին ավանդատու է թե ոչ։ Ակկրեդիտիվով դրամ կարելի է ստանալ ՍՍՌՄ ցանկացած քաղաքում կամ շրջանում։*

*Ակկրեդիտիվներ տրվում են 5000 ռ., 3000 ռ. և 1000 ռ. գումարով։*



# ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐԻՆ

ԸՆԿԵՐ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐ.

ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԵՑԵՔ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐ ԸՆԿ. ԸՆԿ. ԲԱԼԱՇՈՎԻ ԵՎ ՎՅՈՒԿՈՎԻ ԻՐԵՆՑ ՑԵԽԵՐՈՒՄ ԱՆՑԿԱՑՐԱԾ ԶՐՈՒՅՑՆԵՐԸ, ՈՐ ՄԵՆՔ ԲԵՐՈՒՄ ԵՆՔ ՆԵՐՔԵՎՈՒՄ: ԿԱԶՄԱԿԵՐՊԵՑԵՔ ՆՄԱՆ ԶՐՈՒՅՑՆԵՐ, ՕԳՏԱԳՈՐԾԵԼՈՎ ՁԵՐ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ ԵՂԱԾ ՓԱՍՏԵՐԸ:

## ՄԵՐ ՑԵԽԻ ՌԵԶԵՐՎՆԵՐԸ

Մարտի 17-ին ագիտատոր-ինժեներ ընկ. Բալաշովը Հաղորդակցության ճանապարհների ժողկոմատի Կալուգայի մեքենաշինական գործարանի № 3 ցեխի բանվորների և ինժեներատեխնիկական անձնակազմի համար զրույց անցկացրեց՝ «Մեր ցեխի ռեզերվները» թեմայով:

*18-րդ պարտիական կոնֆերանսն արդյունաբերության և տրանսպորտի առջև դրեց մեծ խնդիրներ։ Այս տարի արդյունաբերության համախառն արտադրանքը պետք է աճի 17—18 տոկոսով, իսկ մեքե-*

նաշխնության արտադրանքը՝ 26 տոկոսով: Շահագործման են հանձնվելու 1151 նոր և 425 վերակառուցվող ձեռնարկություններ: Բայց սխալ կլիներ կարծել, թե արտադրանքի աճը նախատեսված է միայն ի հաշիվ նոր ձեռնարկությունների: Անհրաժեշտ է, որ արդեն գործող ձեռնարկությունները ևս տան զգալիորեն ավելի շատ արտադրանք: Նշանակում է, մեզանից յուրաքանչյուրը պետք է հարց տա իրեն, թե ես արդյո՞ք գործարանին տալիս եմ այն ամենը, ինչ կարող եմ տալ, արդյո՞ք լրիվին օգտագործում եմ ինձ վստահված տեխնիկան, ի՞նչ պետք է ես անեմ, որպեսզի առանց հատուկ ծախսերի, եղած սարքավորման միջոցով երկրին տամ ավելի՛ շատ արտադրանք, ավելի՛ լավ որակի և իջեցնեմ նրա ինքնարժեքը:

Դրա համար անհրաժեշտ է, որ մենք նորից ուսումնասիրենք յուրաքանչյուր դազգյահը, յուրաքանչյուր մեքենան, քննադատորեն վերանայենք աշխատանքի կազմակերպումը: Իմ ձեռքի տակ կան մի քանի փաստեր, որոնք ցույց են տալիս, որ մեր ցեխը մեծ ռեզերվներ ունի աշխատանքի արտադրողականությունը բարձրա-



ցնելու և արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու համար:

Կարծում եմ, որ ձեզանից յուրաքանչյուրը, եթե տնտեսաբար նայի գործին, այդ մասին կարող է բերել բազմաթիվ ապացույցներ:

Ամենից առաջ տեսնենք, թե մենք ինչպե՞ս ենք օգտագործում դազգյահները: Քանի՞ անգամ ենք մենք անցել պարապ կանգնած չորս իմպորտային դազգյահների կողքով: Բայց չէ՞ որ դրանցից յուրաքանչյուրին վճարված է 15—20 հազար ռուբլի ոսկով: Այդ դազգյահները պարապ կանգնած են մեկ տարուց ավելի և մենք արդեն նույնիսկ սովորել ենք դրան: Պարտիական կոնֆերանսը մեզ սովորեցնում է այլ կերպ վերաբերվել նման փաստերին:

ԽՄԵԼՅԱՆՈՎ (Տեխնիկական վերահսկողության բաժնի տեսուչ):

Պորտալային-ֆրեզերային դազգյահը կարելի է գործի դնել: Այժմ ձողերը մշակվում են ռանդող դազգյահի վրա, և որակը վատն է լինում. ռանդելուց հետո անհրաժեշտ է լինում, որ փականագործները շատ աշխատեն նրանց վրա ու հղկեն: Իսկ եթե ձողերը մշակենք ֆրեզերային դազգյահով, հղկման կարիք չի զգացվի, հե-

նմանապես, աշխատանքի արտադրողականությունը կբարձրանա:

ԱԳԻՏԱՏՈՐ. Ցեխի պետը կորոշի, թե որքան նպատակահարմար է ձեր առաջարկը: Ես կարծում եմ, որ ընկ. Եմելյանովն իրավացի է: Այնուամենայնիվ, ես գտնում եմ, որ մենք այժմ չենք կարողանա ռացիոնալ կերպով օգտագործել այդ բոլոր դազգյահները, և դրանք առանց վնաս կրելու կարելի է հանձնել այնպիսի գործարանի, որտեղ դրանց կարիքն զգում են:

Մնացած դազգյահները մեր գործարանում բեռնավորված են, բայց տեսնենք, թե նրանք ինչպե՞ս են բեռնավորված: Ես հաշվել եմ 15 դազգյահ, որոնք ավելի շատ ժամանակ պարապ կանգնած են լինում, քան թե աշխատում են: Մյուս դազգյահների պարապուրդները նույնպես անթույլատրելիորեն մեծ են: Անցյալ տարի մեր ցեխի դազգյահները պարապուրդ էին տվել 100.317 ժամ: Վերամբարձ-ռիխտային դոմկրատի համար դետալներ պատրաստելու վրա ծախսվում է 930 դազգյահ-ժամ: Եթե պարապուրդներ չլինեին, մենք կկարողանայինք տրանսպորտին լրացուցիչ կերպով տալ 108 ռիխտային մեքենա, այսինքն՝ լրացուցիչ կերպով կտայինք 1.620



հազար ռուբլու արտադրանք: Հասկանալի է, որ այդ լավ կանդրադառնար նաև մեր աշխատավարձի վրա: Հունվարին և փետրվարին միայն անվային խմբի դազգյահները պարապուրդ են տվել 1140 ժամ— մի ժամանակամիջոց, որը բավական էր 95 զուգանիվ պատրաստելու համար: Պարապուրդների համար հանցանքի մի որոշ բաժին ընկնում է նաև մյուս ցեխերի վրա, որոնք մեզ վատ են նյութեր մատակարարում:

Շատ ենք պարապուրդներ տալիս գործիքների բացակայության պատճառով: Թվում է, թե դա օբեկտիվ պատճառ էր: Բայց այդպես չէ՛: Այստեղ մեղավոր են ամենից առաջ այն մարդիկ, ովքեր չեն պահպանում, կոտրատում են գործիքները: Այս հարցի մասին շատ բան կարող է պատմել գործիքների պահեստի վարիչ ընկ. Մակարովը:

ՄԱԿԱՐՈՎ.— Ես հիմա կբերեմ վերջին օրերս կոտրված մի գործիք, և դուք կտեսնեք, թե այստեղ պատճառն օբեկտիվ է, թե սուբեկտիվ:

ԱԳԻՏԱՏՈՐ.— Հետևությունը, ընկերնե՛ր, պարզ է, եթե վերացնենք դազգյահների պարապուրդները, ապա կկարողանանք մեծապես ավելացնել արտադրանքի թողարկումը, կամ թե՝ պլանը կատարել զգալիորեն

ավելի քիչ դազգյահների միջոցով, իսկ ավելորդ դազգյահները հանձնել մյուս ցեխերին կամ ձեռնարկություններին։

Դազգյահի սոսկ աշխատանքը, ի հարկե, դեռ քիչ է։ Անհրաժեշտ է, որ դազգյահն աշխատի առավելագույն էֆեկտիվությամբ։ Իսկ այս մասին բոլորը չէ՛, որ մտածում են։ Մեզանում, օրինակ, շատ դազգյահներ աշխատում են առանց սառեցման։ Թե այդ ի՞նչ է նշանակում, ես ձեզ ցույց կտամ «Կլոլման» սիստեմի դազգյահի օրինակով։ Որոշ ժամանակ սրանից առաջ այդ դազգյահի աշխատանքը կատարվում էր առանց սառեցման։ Մոտոհորատիչի շտանգայի մշակման վրա ծախսվում էր 24 ժամ։ Թանկարժեք ֆրեզները բառիս բուն իմաստով այրվում էին, օրվա ընթացքում ֆրեզները փոխվում էին առնվազն 6 անգամ։ Բայց ահա հարմարեցրինք սառեցումը։ Հասարակ միջոցառում է, բայց դա հնարավորություն տվեց ավելացնել դազգյահի պտույտների թիվը, ներհատման խորությունը և միևնույն շտանգան պատրաստել 7—8 ժամվա ընթացքում։ Ֆրեզի գործողության ժամանակամիջոցը՝ առանց սրելու, ավելացավ 10 անգամ։

Արդյունքը տեսնում է ձեզանից յուրա-



քանչյուրը, և այնուամենայնիվ շատ բանվորներ ուշադրություն չեն դարձնում սառեցմանը։ Ահա օրինակ, ընկ. Գրոզովը։ Նա պատրաստում է հսկայական դետալներ։ Լավ սառեցումն այստեղ հատկապես անհրաժեշտ է, իսկ նա դազգյահի վրա կախել է մի աման, որի միջից հազիվ հազ ընկնում են էմուլսիայի կաթիլները։ Փոխանակ կարգավորելու սառեցումը, ընկ. Գրոզովը պակասեցնում է դազգյահի պտույտների թիվը, ավելի երեսանց է տաշում, փչացնում է գործիքը, ուշացնում է դետալների հանձնման ժամկետները։ Պետք է ենթադրել, որ ընկ. Գրոզովը և մյուս ընկերները վաղը հենց իրենց դազգյահների վրա կարգի կբերեն սառեցումը։

Անիվային խմբի 12 դազգյահներ բոլորովին չունեն սառեցում, և աշխատում են չափազանց ցածր արագությամբ։ Եթե այդ դազգյահներն ապահովենք սառեցմամբ, ապա նրանց արտադրողականությունը հնարավոր կլինի ավելացնել առնվազն 25 տոկոսով։ Բանից դուրս է գալիս, որ մենք 12 դազգյահով կատարում ենք այնպիսի աշխատանք, որը կարելի է կատարել 9 դազգյահով։

Ահա ձեզ մի օրինակ, թե ինչպես ա-

ռանց հատուկ ծախսերի կարելի է բարձրացնել սարքավորման արտադրողականությունը։ Եթե մի լավ մտածենք, կգտնենք նաև այլ օրինակներ։

ՎԵՊՐԻՆՑԵՎ (մեխանիկական բաժանմունքի պետ)։ Ընկ. Բալաշովն իրավացի է։ Մենք իրոք որ ռացիոնալ չենք օգտագործում մեր սարքավորումը։ Մենք ունենք երեք ռեվոլվերային դազգյահ, որոնք օգտագործվում են ինչպես սովորական ճախարակային դազգյահներ։ Իսկ եթե դրանք օգտագործվեն ըստ նպատակի,— արտադրողականությունը կբարձրանա երկու անգամ։ Բայց մենք ունենք արտադրողականության բարձրացման նաև այլ ռեզերվներ։ Մեխանիկական բաժնում 30 դազգահներ նորման կատարում են ընդամենը միայն 50 տոկոսով։ Այսպիսով, յուրաքանչյուր օր 5 դազգյահ 3 հերթափոխի ընթացքում աշխատում է ապարդյուն։

Նորմաները թերակատարողների մեծամասնությունը երիտասարդ բանվորներ են, որոնց հարկավոր է լուրջ օգնություն ցույց տալ։ Այդ օգնությունը նրանք ամենից առաջ պետք է ստանան ձեզանից, ընկ. ընկ. Սիդորո՛վ, և Կրիվո՛վ։ Այժմ դուք միայն հսկում եք այն բանին, որ ձեր աշխատամասում բոլոր դազգյահները պտտվեն, բայց



մի՞թե դազգյահները կարգավորողներից միայն այդ է պահանջվում։ Դուք, ինչպես և վարպետները, պարտավոր եք ասել բանվորին, մանավանդ երիտասարդ բանվորին, թե քանի՞ պտույտ պետք է կատարի դազգյահը, ինչպե՞ս պետք է ռանդել, ավելի լավ է ընտրել ինչպիսի՞ փորիչ, ինչպե՞ս սրել այն, հագցնել տեղը։ Երիտասարդ բանվորներին մեծ օգնություն կարող են ցույց տալ ստախանովականները։ Հարկավոր է հավաքել նրանց, զրուցել այդ մասին։

— Ճիշտ է,— նկատեց ստախանովական խառատ ընկ. Զախարովը,— երիտասարդ բանվորների անփորձության հետևանքով դազգյահներն անտեղի են աշխատեցվում, կոտրատվում են գործիքները, խոտան է տրվում։ Մեր խորհուրդը մեծ օգնություն ցույց կտա նրանց։

— Իսկ որքա՞ն մեռած, ժամանակ, դրամ են «կլանում» խոտանարարները,— շարունակում է ընկ. Վեպրինցևը։— Ահա, թե գայլիկոնող բանվոր Ռոժկովն ինչեր արեց միայն մեկ հերթափոխի ընթացքում։ Իր աշխատանքային օրը նա սկսեց այն բանից, որ փչացրեց կարդանային լիսեռը։ Բանն այն է, որ նա մոռացել էր աչքի անցկացնել գծագիրը։ Այնուհետև նա փչաց-

րեց ուղղաձև կարապիկի կորպուսը, իսկ վերջում թմբկավոր շարժանիվի վրա 14 միլիմետրի փոխարեն, ինչպես մատնանշված է գծագրի մեջ, փորեց 17 միլիմետրանոց անցք։ Ահա թե ի՜նչ կարող է անել միայն մի խոտանարարը։ Անհրաժեշտ է, որ այս բանի վրա լուրջ ուշադրություն դարձնեն և՛ ադմինիստրացիան, և՛ հասարակական կազմակերպությունները։

— Դուք գիտե՞ք թե փետրվարի ընթացքում խոտանարարները որքան վնաս հասցրին ցեխին,— հարցրեց հավաքվածներին պարտբյուրոյի քարտուղար ընկ. Կորոլևը։— 17.912 ռուբլի։ Միայն դազգյահների վրա աշխատողները տվին 2253 ռուբլու խոտան։ Խոտանված դետալների շտկման վրա ծախսվեց 802 դազգյահ-ժամ։ Որոշ խոտանարարներ աշխատում են իրենց հանցանքը գցել դազգյահի վրա, գործիքի վրա։ Խառատ Մյազկովը, օրինակ, փչացրել էր Պլատովի բեռնամբարձի տուփը և բղավում էր, թե դազգյահն է մեղավոր։ Հարց ենք տալիս նրան, թե ինչո՞ւ հինգ անցքը ճիշտ է փորված և միայն վեցերորդն է ոչ ըստ չափսի։ Բանն այստեղ, ի հարկե, դազգյահը չէ, այլ գործի նկատմամբ Մյազկովի անպատասխանատու վերաբերմունքը։



Նույնը պետք է ասել նաև ձեր մասին, ընկ. Լավրինով։ Դուք աշխատում եք նույնտիպի դազգյահի վրա, ինչ որ ընկ. Զախարովը։ Դուք պակաս փորձ չունեք, քան նա, իսկ արդյունքները տարբեր են։ Ընկ. Զախարովն իր պլանը կատարում է 150 տոկոսով, տալիս է բարձրորակ արտադրանք, իսկ դուք պլանը կատարում եք 70 տոկոսով և հաճախ խոտան եք տալիս։ Ձեզ նման որակյալ ընկերոջը վայել չէ պոչում քարշ գալ։ Պարտիական կոնֆերանսն այդպիսի աշխատանք չէ, որ պահանջեց մեզանից յուրաքանչյուրից։

ԱԳԻՏԱՏՈՐ.— Անհրաժեշտ է, որ մենք քննադատորեն վերանայենք տեխնոլոգիան։ Շարժանիվների շղթային պադերը, չգիտեք թե ինչու, պատրաստվում են փոքրիկ դազգյահով։ Այդ դազգյահի վրա աշխատողները չեն կարող պահպանել անհրաժեշտ ճշգրտություն և հետո փականագործներն ստիպված են լինում չափազանց շատ տաշել։ Շղթային պադերն ավելի լավ է պատրաստել երկայնաձիգ դազգյահների վրա։ Այդ դեպքում աշխատանքի արտադրողականությունը կլինի ավելի բարձր և փականագործի աշխատանքը չի պահանջվի։

ՎԵՊՐԻՆՑԵՎ.— Նույնը կարելի է ասել

նաև որդանձև անիվների փորակների մասին: Այժմ դրանք փորատում են փորիչի միջոցով, որից հետո փականագործներն ստիպված են լինում 8—16 ժամ հղկել: Եթե փորատումը կատարվի որդանձև ֆրեզներով, ապա հղկման կարիք չի զգացվի:

ԱԳԻՏԱՏՈՐ.— Այդպիսի օրինակներ շատ կարելի է բերել: Ռացիոնալիզատորները մտածելու շատ բան ունեն:

Մինչև այժմ մենք խոսում էինք աշխատանքի արտադրողականության աճման ռեզերվների մասին: Մտքերի նույնիսկ թռուցիկ փոխանակությունը ցույց է տալիս, որ այդ ռեզերվները վիթխարի են: Բայց մենք ունենք նաև այլ ռեզերվներ—դրանք տնտեսման աղբյուրներն են: Եթե ձեզանից որևէ մեկն առիթ է ունեցել գտնվելու ցեխում այնպիսի ժամանակ, երբ բոլոր մեքենաները կանգնած են, ապա դուք հավանորեն ուշադրություն դարձրած կլինեք մի յուրօրինակ «երաժշտության» վրա— սուլոցների, ֆշշոցների: Դա՝ վատ փակված ծորակներից դուրս եկող խտացված օդի սուլոցն է: Օդի ծախսման համար պատասխանատու եք դուք, ընկեր Ասմոլով: Իսկ ձեզ հայտնի՞ է արդյոք, թե գործարանի վրա ի՞նչ է նստել ձեր այդ «երաժշտությունը»: Եկեք



հաշվենք: Հունվար և փետրվար ամիսների ընթացքում գերածախսվել է 1604 խորանարդ մետր օդ. օդի յուրաքանչյուր խորանարդ մետրն արժե 37 կոպեկ: Այսպիսով, դուք երկու ամսվա ընթացքում «սուլել եք» 593 ռուբլի: Նույնպես էլ առանց խնայողության է ծախսվում ջուրը, շոգին, փալասները և մանավանդ գործիքները:

Կարծում եմ, որ դուք բոլորդ էլ կարդացել եք «կայծակ» հեռագիրը Գամաղեյշչիկովի և Պորխվաևի մասին: Նրանք կոտրել են երկու ատամնաչափիչ, ավելի քան 500 ռ. արժողությամբ: Ամոթալի փաստ: Դժբախտաբար, այդպիսի դեպքերը հազվադեպ չեն: Այդ մասին ավելի մանրամասն ձեզ կպատմի ընկ. Մակարովը: Ես տեսնում եմ, որ նա բերել է դեպի գործիքները բարբարոս վերաբերմունքի մի ամբողջ արկղ «իրական ապացույցներ»:

ՄԱԿԱՐՈՎ.— Կարծեք թե այնքան էլ մեծ չէ կոտրված գործիքի արկղը. բայց գիտե՞ք, թե դա ի՞նչ է նստել գործարանի վրա: Ահա, այս կալիբրը միակն է ամբողջ գործարանում: Երեկ այդ կալիբրը ջարդեց խառատ Ռատնիկովը: Չեմ հասկանում, թե ինչպե՞ս կարելի է կոտրել այսպիսի ամուր բանը: Ռատնիկովը կասի, թե դրա համար

ինքը վճարել է։ Այո՛ վճարել է։ Բայց դա ի՞նչ նշանակություն ունի։ Չէ՞ որ այդ ռուբլիներով չի կարելի չափել փորձերը։ Մինչև որ մենք ձեռք բերենք նոր կալիբրը, արտադրանքի թողարկումը կարող է խանգարվել։

— Նախորդ երկու ամսվա ընթացքում մենք գործածել ենք 42.000 ռուբլու գործիքներ։ Բավական մեծ գումար է։ Իսկ եթե դրան ավելացնենք նաև դազգյահների այն պարապուրդը, որ կատարվել է գործիքների պակասության պատճառով, ապա վնասը կլինի է՛լ ավելի մեծ։ Ժամանակն է վերջ դնել գործիքների նկատմամբ անտնտեսվար վերաբերմունքին։

ԱԳԻՏԱՏՈՐ.— Եզրափակման մեջ մատնանշեմ անտնտեսման և՛ս մեկ աղբյուր։ Մեզ հանձնարարելու էին յուրացնել դրեզինի արտադրությունը։ Դա մի փոքր մեքենա է, ոչ բարդ կոնստրուկցիայով. իսկ մենք դրա արտադրությունը յուրացրեցինք,— ամոթ է նույնիսկ ասել,— մոտ մեկ տարվա ընթացքում, և 40.000 ռուբլու փոխարեն ծախսեցինք 76.000 ռուբլի։ Սակայն մեկ ուրիշ օրինակ։ Մեր ցեխի կոլեկտիվն իբրև նվեր 18-րդ պարտկոնֆերանսին, պարտավորվել է հարվածային տեմպով յուրացնել մի



բարդ մեքենայի արտադրությունը։ Դա ինժեներ Բարիկինի սիստեմի պծամոնտաժային գնացքի կամրջակն է։ Մենք դրա արտադրությունը յուրացրինք 20 օրում և պետությանը տվինք 232.000 ռուբլու խնայողություն։ Սա, ի հարկե, լավ աշխատանք է։ Մենք պարտավոր ենք ամրապնդել մեր առաջին հաջողությունը, յուրաքանչյուր օր աշխատել հարվածային կերպով, օգտագործելով մեր բոլոր ներքին ռեզերվները։

*

Զրույցի ընթացքում խոսողներ՝ ընկ. ընկ. Շիշոնկովը և Զախարովը, տեխնիկական վերահսկողության բաժնի տեսուչ ընկ. Մոտովը և ուրիշներն արժեքավոր առաջարկներ արին։ Հաջորդ օրը ագիտատորին մոտեցավ փականագործ ընկ. Վասիլևը և ասաց, թե երեկվա զրույցը նրան ստիպեց մտածել որոշ խնդիրների մասին և կարծեք թե դա իզուր չեղավ։ Ահա Վասիլևն արել է մի ռացիոնալիզատորական առաջարկ, որն ընկ. Բալաշովի կարծիքով կտա միջոցների և գունավոր մետաղի մեծ տնտեսում։

Ցեխի պետ ընկ. Կիսլյակովսկին, պարտբյուրոյի քարտուղար ընկ. Կորոլևը և տեխնիկական բյուրոյի պետ ընկ. Կարպովը կարծիքների փոխանակությունից հետո ե-

կան այն հետևության, որ որոշ առաջարկներ կարելի է իրագործել անհապաղ։ Բոլտերի փորատումը խառատման դազգյահից փոխադրեցին «պիտլեր» սիստեմի դազգյահի վրա, ինչպես որ առաջարկել էր ընկ. Վեպրինցևը։ Այստեղ բոլտի փորատումը տևում է 2 րոպե, 5—6 րոպեի փոխարեն։ Պնդօղակա-ֆրեզերային դազգյահի վրա դրվում է երկրորդ ֆրեզը, որը հնարավորություն կտա զգալիորեն բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։ Խառատ Գրոզովի դազգյահի վրա նորոգվեց սառեցման սարքը։ Դետալների մշակման որակն զգալիորեն լավացավ, արտադրողականությունն աճեց 15 տոկոսով։

Պարտբյուրոն լավագույն ստախանովականների հետ միասին խորհրդակցությանը հրավիրել էր նաև նորմաները թերակատարողներին։ Խորհրդակցության ժամանակ խոսվեց ստախանովականների կողմից երիտասարդ բանվորներին ցույց տրվելիք օգնության ձևերի մասին։ Ամենամոտիկ ժամանակներս պարտբյուրոն նախատեսնում է հրավիրել ռացիոնալիզատորների խորհրդակցություն, որպեսզի նրանց հետ միասին ավելի հանգամանորեն քննարկվեն զրույցի ընթացքում շոշափված հարցերը։



## ՀՈՒՄՔԻ, ՆՅՈՒԹԵՐԻ, ԳՈՐԾԻՔՆԵՐԻ ԵՎ ՍԱՐՔԱՎՈՐՄԱՆ ՀԱՇՎԱՌՈՒՄԸ, ՕԳՏԱԳՈՐԾՈՒՄՆ ՈՒ ՊԱՀՊԱՆՈՒՄԸ

Այս թեմայի շուրջը մարտի 24-ին Մոսկվայի հեծանվային գործարանի ավտոմատ ցեխի բանվորների հետ զրույց անցկացրեց ցեխի պետ Բորիս Վասիլևիչ Վյունկովը։

*Համամիութենական 18-րդ պարտկոնֆերանսը, ինչպես դուք գիտեք, մեծ ուշադրություն նվիրեց արդյունաբերության աշխատանքի մեջ գոյություն ունեցող թերություններին։ Մասնավորապես, կոնֆերանսն ընդգծեց հումքի, նյութերի, գործիքների և սարքավորման ճիշտ հաշվառման, պահպանման ու տնտեսաբար օգտագործման համար պայքարելու անհրաժեշտությունը։ Այդ հարցին էլ հենց մենք կնվիրենք այսօրվա զրույցը։*

*Ընկ. Վոզնեսենսկու զեկուցման մեջ բեր-*

ված է երկու նշանակալից թիվ: 1940 թվականին արդյունաբերության ռազմական մոբիլիզացիայի հիման վրա Ամերիկայի Միացյալ Նահանգներն իրենց արտադրությունն ավելացրին 1929 թվականի համեմատությամբ ընդամենը 11 տոկոսով: Սովետական Միությունը նույն այդ ժամանակվա ընթացքում ամբողջ սոցիալիստական արդյունաբերության արտադրանքն ավելացրեց 5,3 անգամ:

Այս թվերն ակնառու կերպով ցույց են տալիս սոցիալիստական կարգերի առավելությունները կապիտալիստականի համեմատությամբ: Կապիտալիստական աշխարհում անհնարին է արդյունաբերության պլանային արտադրությունը. զարգացնելով տնտեսության այս կամ այն ճյուղը, կապիտալիստները հետապնդում են միայն իրենց անձնական շահերը և քիչ են հոգ տանում ամբողջ ժողովրդական տնտեսության մասին, համաժողովրդական բարիքի մասին: Կապիտալիստական մրցակցությունը, ծանր ճգնաժամերը հասցնում են այն բանին, որ անօգտագործելի են մնում, իսկ երբեմն էլ ուղղակի կործանվում են հսկայական հարստություններ: Կապիտալիստական երկրների արտադրողական ու-



ժերի աճն արհեստականորեն արգելակվում է:

Ի հակակշիռ դրան, սոցիալիստական տնտեսությունը, որը չգիտե ճգնաժամեր, զարգանում է պետական պլանի համաձայն, ամեն կերպ առաջ է մղում բոլոր արտադրողական ուժերը:

Դուք գիտեք, թե ինչպես Սովետական Միության մեջ ամենուրեք եռում է կյանքը: Այն տեղերում, որտեղ առաջ անանցանելի տայգա էր, ճահիճներ, լեռներ, այժմ աճում են հզոր ձեռնարկություններ, անց են կացվում երկաթուղիներ, փորվում են ջրանցքներ: Ամայի վայրերը կենդանություն են ստանում: Նոր կյանքն սկսում է աղբյուրի պես հորդել նաև այն տերիտորիաներում, որտեղ սովետական իշխանություն հաստատվել է միայն վերջերս: Այս տեսակետից ցայտուն օրինակ են ծառայում մերձբալթյան ռեսպուբլիկաները:

Վերցնենք, օրինակ, Էստոնիան: Էստոնական բուրժուազիան իր արդյունաբերությունը հասցրել էր քայքայման: Այնպիսի ձեռնարկություններ, ինչպես Կրենհոլմյան մանուֆակտուրան և Բալթիական նյութի ֆաբրիկան,— գործում էին իրենց արտադրական կարողության ընդամենը

մեկ երրորդի չափով։ Հռչակավոր Ռուսո-Բալթիական գործարանը և «Դվիգատել» գործարանն ավերվել էին։ Մանր ֆաբրիկաներն ու գործարաններն աշխատում էին միայն մեկ հերթափոխով, իսկ էստոնական չորս լուցկու ֆաբրիկաներից երեքը փակվել էին հօգուտ շվեդական լուցկու տրեստի շահերի և նրա հետ կայացված ուղղակի համաձայնության հիման վրա։

Էստոնիան Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա դարձավ բոլորովին վերջերս, իսկ նույն այդ ձեռնարկությունները, որոնք տարիներ շարունակ աշխատում էին մեկ հերթափոխով և այն էլ ոչ մեծ բեռնավորմամբ, այժմ արդեն գործում են 2—3 հերթով։ Արդեն 1940 թվի չորրորդ եռամսյակում Էստոնիայի արդյունաբերական արտադրանքն աճեց 1939 թ. չորրորդ եռամսյակի համեմատությամբ 40%-ով։ Մեկը մյուսի հետևից վերականգնվում են բուրժուազիայի կողմից ավերված ֆաբրիկաները։ Կառուցվում են նոր ձեռնարկություններ։ Ավելի քան մեկ ու կես անգամ աճել է ռեսպուբլիկայում արդյունաբերական բանվորների թիվը։ Համարյա լրիվին վերացված է գործազրկությունը, նույնիսկ որոշ պրոֆեսիաների գծով զգացվում է որակյալ բանվորների պակաս։



Այսպիսին է սովետական կարգերի կենսարար ուժը, որն ամեն կերպ զարգացնում և առաջ է մղում բոլոր արտադրողական ուժերը։

Սովետական սոցիալիստական տնտեսության հաջողություններն իրոք որ վիթխարի են։ Բայց պետք է ուղղակի ասել, որ այդ հաջողությունները կլինեին է՛լ ավելի զգալի, եթե մեր աշխատանքի մեջ չլինեին մի շարք թերություններ։ Է՛լ ավելի մեծ հաջողությունների հասնելու համար, անհրաժեշտ է վերացնել սարքավորման, ամեն տեսակ գույքի ու նյութերի հաշվառման գործում ֆաբրիկաներում ու գործարաններում գոյություն ունեցող անկանոնությունները։ Մեզանում դեռ հաճախ անբավարար են օգտագործվում դազգյահներն ու մեքենաները, անտնտեսաբար են ծախսվում գործիքները, հումքը, նյութերը, վառելիքն ու էլեկտրոէներգիան, վատ են պահպանվում նյութական արժեքները։ Այդ բանում դժվար չէ համոզվել հենց մեր ցեխի կյանքից վերցված օրինակներով։

Դեռ վերջերս էլ մատակարարման բաժնից ստանալով մետաղը կամ թե խառը ցեխերից ստանալով կռանվածքն ու հումքը, մենք շատ վատ էինք ստուգում դրանց

թիվը կամ քաշը: Մենք վատ էինք հաշվի առնում ցեխում նաև մետաղի ծախսումը: Պատրաստի դետալները մյուս ցեխերին էինք հանձնում միշտ ու ամենուրեք առանց ստույգ հաշվառման: Բնական է, որ այդպիսի պայմաններում մետաղի ծախսումը կատարվում էր աչքի չափով և հենց միայն մեր ցեխում յուրաքանչյուր ամիս կես վագոն թանկարժեք մետաղ քամուն էր տրվում: Հաշվեցեք, հապա, թե այդպիսի «անմեղ» եղանակով որքա՞ն մետաղ էր վատնվում ամբողջ գործարանում: Բայց չէ՞ որ, ինչպես մեզ մոտ, մետաղը նույն կերպ վատնվում էր նաև մյուս ձեռնարկություններում: Ամենակոպիտ հաշիվը ցույց կտա ձեզ, որ պետությունն այդ եղանակով կորցնում էր միլիոնավոր ռուբլիներ:

Մեր ցեխում նույնպիսի դրություն էր նաև մեքենաները մաքրելու նյութերի, այսպես կոչված՝ «փալասի» վերաբերմամբ: Դուք կասեք, թե պետական մասշտաբով փալասն ի՞նչ բան է որ: Բայց ահա, հաշվի առեք, որ անցյալ տարվա օգոստոսին մենք ծախսել ենք 4,5 հազար ռուբլու փալաս, իսկ սարքավորումը հաճախ մնում էր կեղտոտ վիճակում: Այժմ ցեխի բոլոր



դազգյահները մաքրվում են ավելի՛ լավ, իսկ փալասի համար մենք ծախսում ենք 2,5 անգամ պակաս գումար: Այստեղ գերբնական ոչինչ չկա. փալաս ավելի քիչ է ծախսվում, որովհետև նրա ծախսումն այժմ խիստ կերպով հաշվի է առնվում. փալասն այժմ անտեղի դեն չեն շպրտում, այն ավելի լավ են օգտագործում, իսկ ցեխի մաքրությունը, բանից դուրս եկավ, որ կախված է ամենևին էլ ո՛չ «փալասի» ծախսման քանակից: Ճիշտ այդպես էլ կարելի՛ է ու հարկավո՛ր է տնտեսաբար օգտագործել նաև յուղելու նյութերը: Այսպիսի տնտեսումը— նյութերի ճիշտ օգտագործումը մեր խնդիրներից մեկն է:

Ես օրինակը բերեցի մեր ցեխից, որովհետև մեր ցեխը մեզ ավելի մոտ է ու մենք ավելի լավ ենք տեսնում: Բայց եթե դուք ինքներդ մեր կորուստների թվերը բազմապատկեք սովետական արդյունաբերության գործարանների ու ցեխերի հսկայական թվի հետ, ապա պարզ կլինի, թե ինչպես են կոպեկներից կազմվում միլիոններ և նույնիսկ միլիարդ ռուբլիներ:

ՀամԿ(բ)Պ համամիութենական 18-րդ կոնֆերանսում անտնտեսավարության բազմաթիվ փաստեր բերվեցին գործարանե-

թիվը կամ քաշը: Մենք վատ էինք հաշվի առնում ցեխում նաև մետաղի ծախսումը: Պատրաստի դետալները մյուս ցեխերին էինք հանձնում միշտ ու ամենուրեք առանց ստույգ հաշվառման: Բնական է, որ այդպիսի պայմաններում մետաղի ծախսումը կատարվում էր աչքի չափով և հենց միայն մեր ցեխում յուրաքանչյուր ամիս կես վագոն թանկարժեք մետաղ քամուն էր տրվում: Հաշվեցեք, հապա, թե այդպիսի «անմեղ» եղանակով որքա՜ն մետաղ էր վատնվում ամբողջ գործարանում: Բայց չէ՞ որ, ինչպես մեզ մոտ, մետաղը նույնկերպ վատնվում էր նաև մյուս ձեռնարկություններում: Ամենակոպիտ հաշիվը ցույց կտա ձեզ, որ պետությունն այդ եղանակով կորցնում էր միլիոնավոր ռուբլիներ:

Մեր ցեխում նույնպիսի դրություն էր նաև մեքենաները մաքրելու նյութերի, այսպես կոչված՝ «փալասի» վերաբերմամբ: Դուք կասեք, թե պետական մասշտաբով փալասն ի՞նչ բան է որ: Բայց ահա, հաշվի առեք, որ անցյալ տարվա օգոստոսին մենք ծախսել ենք 4,5 հազար ռուբլու փալաս, իսկ սարքավորումը հաճախ մնում էր կեղտոտ վիճակում: Այժմ ցեխի բոլոր



դազգյահները մաքրվում են ավելի՛ լավ, իսկ փալասի համար մենք ծախսում ենք 2,5 անգամ պակաս գումար: Այստեղ գերբնական ոչինչ չկա. փալաս ավելի քիչ է ծախսվում, որովհետև նրա ծախսումն այժմ խիստ կերպով հաշվի է առնվում. փալասն այժմ անտեղի դեն չեն շպրտում, այն ավելի լավ են օգտագործում, իսկ ցեխի մաքրությունը, բանից դուրս եկավ, որ կախված է ամենևին էլ ո՛չ «փալասի» ծախսման քանակից: Ճիշտ այդպես էլ կարելի՛ է ու հարկավո՛ր է տնտեսաբար օգտագործել նաև յուղելու նյութերը: Այսպիսի տնտեսումը— նյութերի ճիշտ օգտագործումը մեր խնդիրներից մեկն է:

Ես օրինակը բերեցի մեր ցեխից, որովհետև մեր ցեխը մեզ ավելի մոտ է ու մենք ավելի լավ ենք տեսնում: Բայց եթե դուք ինքներդ մեր կորուստների թվերը բազմապատկեք սովետական արդյունաբերության գործարանների ու ցեխերի հսկայական թվի հետ, ապա պարզ կլինի, թե ինչպես են կոպեկներից կազմվում միլիոններ և նույնիսկ միլիարդ ռուբլիներ:

ՀամԿ(բ)Պ համամիութենական 18-րդ կոնֆերանսում անտնտեսավարության բազմաթիվ փաստեր բերվեցին գործարաննե-

րում սարքավորման, գործիքների, հումքի և նյութերի օգտագործման բնագավառից: Ընկեր Մալենկովն իր զեկուցման մեջ բերեց Ժողովրդական Տնտեսության Հաշվառման Կենտրոնական Վարչության տվյալներն այն մասին, որ առ 1-ն դեկտեմբերի 1940 թվի, 12 արդյունաբերական ժողկոմատների ձեռնարկություններում եղած ապրանքա-նյութական արժեքների պաշարները նյութական արժեքներ պահելու սահմանված նորմաներից գերազանցում էին 2.610 միլիոն ռուբլով:

Դիմենք մեր գործարանին: Դուք բոլորդ մեր բազմատիրաժ թերթում կարդացել եք այն թղթակցությունները, որոնք վերաբերում են գործարանում պետական արժեքների ոչ-ռացիոնալ օգտագործմանը, այդ արժեքները մեռցնելուն: Տեխնիկական վերահսկողության բաժնի աշխատող ընկ. Տիխոմիրովը թերթում գրել էր, որ գործարանի պահեստում մոտավորապես 20 զանազան տեսակի դազգյահներ, մի քանի տարի շարունակ ընկած են անօգտագործելի: Դրանց թվում կան իմպորտային դազգյահներ, որոնց համար վճարված է ոսկով, և որոնք դուրս են գրվել զանազան հեռավոր երկրներից: Գործարանի



գլխավոր հաշվապահ ընկ. Պենյազևը գրում էր, որ առ 1-ն հունվարի գործարանում եղել է 60 միավոր չգործող ու չսարքավորված դազգյահ:

Սրանք են մեր գործարանին վերաբերող փաստերը: Մեր ամբողջ երկրի ձեռնարկություններում ու շինարարություններում, առ 1-ն նոյեմբերի 1940 թ., չէին գործում 68.000 բացարձակապես պիտանի դազգյահներ: Այս թիվն ավելի մեծ է Ամերիկայի համար լավագույն տարվա՝ 1929 թվականի ամբողջ տարվա ընթացքում, ԱՄՆ-ում արտադրված դազգյահների թվից: Չէ՞ որ այս բոլորը հսկայական արժեքներ են, որ մնում են անօգտագործելի:

Բայց սարքավորումն անօգտագործելի թողնելը հարցի միայն մեկ կողմն է: Մյուս կողմն այն է, որ եթե ձեռնարկությունում չկա հարկ եղած հաշվառում, ապա ամեն ժամանակ աշխատանքի մեջ կարող են ծագել ամեն տեսակի անակընկալներ: Անխուսափելի են պարապուրդներն ու ծրագրի ձախողումները՝ հումքի, նյութերի, գործիքների պակասի հետևանքով: Վերջապես, վատ հաշվառումից, վատ «տնտեսական աչքից» աշխատում են օգտվել ամեն տեսակ ստահակները, որոնք

պատրաստ են հարստանալու պետության հաշվին:

«Խնդիրն այն է,— ասաց ընկ. Մալենկովը,— որ մեր ձեռնարկություններում ու երկաթուղիներում վերջ դնենք հաշվառման անխնամ վիճակին:

Անհրաժեշտ է, որ արդյունաբերական ձեռնարկություններն ու երկաթուղիները ունենան սարքավորման, ամեն տեսակ գույքի և նյութերի ճիշտ կազմակերպված հաշվառում»:

Ինձ կարող են ասել, թե վատ է, իհարկե, երբ սարքավորումը չի օգտագործվում, բայց չէ՞ որ դա կախված է տնտեսվարներից: Ի հարկե, տնտեսվարներից շատ բան է կախված, բայց անմիջականորեն դազգյահի մոտ կանգնած բանվորը ևս կապ ունի սարքավորման օգտագործման հետ: Ես այս միտքը կպարզաբանեմ մեզ մոտիկ մի օրինակով:

Մեր գործարանի ավտոմատ ցեխում ռեվոլվերային դազգյահի վրա աշխատում է օպերատոր Օրեշկովը: Նա նորման չի կատարում, իսկ դա նշանակում է, որ նրա դազգյահը լրիվ չի բեռնավորված, լրիվին չի օգտագործվում: Մինչդեռ, Օրեշկովի ընկերները՝ Ցանոկաևը և մյուս օպերատորները, որոնք այդ նույն դազգյա-



հի վրա աշխատում են մյուս հերթափոխերում, նորմաները գերակատարում են: Ընկ. Օրեշկովը մեկ ու կես տարի է, որ աշխատում է այդ դազգյահի վրա: Հետևապես, նրա ետ մնալը չի կարելի բացատրել իր գործը չիմանալով: Ընկ. Օրեշկովը պարզապես չի ուզում աշխատել այնպես, որ լրիվին, առավել արդյունավետությամբ օգտագործի իր դազգյահը:

Ինչպես տեսնում եք, հենց բանվորներից էլ է կախված սարքավորման ճիշտ օգտագործումը:

Մեզանում դրությունն անբարեհաջող է նաև գործիքների օգտագործման ասպարեզում: Հաճախ պատահում է, որ թանկարժեք գործիքները գործածվում են ոչ ըստ նպատակի, փչանում են սխալ գործածման հետևանքով, ժամանակից շուտ անպետքանում և դեն են շպրտվում: Չէ՞ որ ձեզանից յուրաքանչյուրն իր տանը նախքան մի հին դանակ կամ մուրճ ուրիշին հանձնելը, մի տասն անգամ կմտածի ու կվերամտածի: Ինչո՞ւ է այդպես: Որովհետև դանակն «իրենն» է, «սեփականը», իսկ ցեխում գործիքը «պետական» է. հենց որ մի փոքր «հնացավ»— անմիջապես հանձնում են իբրև լոմ:

Մեր ցեխի փորձից կարելի է ասել, թե

որքա՜ն մեծ վնաս է հասցնում գործիքների սխալ սրումը։ Իբրև օրինակ վերցնենք կարծր ձուլվածքից պատրաստված պլաստինկա ունեցող հատիչը, որ գործածվում է պեդալային սռնիների մշակման համար։ Ճիշտ սրելու դեպքում, այդ հատիչով կարելի է մշակել 7.000 դետալ, իսկ սխալ սրելու դեպքում, միայն դրա կեսը—երեք ու կես հազար դետալ։ Եթե հատիչը ճիշտ չի սրված, կամ թե սրվել է ոչ-ժամանակին, ապա դանդաղում է աշխատանքը, արտադրանքի որակը վատանում է և գործիքի օգտագործելիության ժամանակամիջոցն էլ կրճատվում է 2—3 անգամ։ Իսկ մեզանում գործիքները բավական հաճախ սրում են սխալ կերպով, ոչ-ժամանակին։

18-րդ պարտկոնֆերանսում խոսվեց նաև հումքի, նյութերի, վառելիքի ու էլեկտրաէներգիայի օգտագործման ասպարիզում գոյություն ունեցող հանցավոր շռայլության մասին։

Այս դեպքում էլ հարկավոր չէ հեռու գնալ, փաստերի հիման վրա համոզվելու համար, թե որքա՜ն լուրջ ու կարևոր են այդ հարցերը։



Մեր գործարանի մատակարարման բաժինը «Կրասնայա տրուբա» գործարանից գնել էր դանազան հաստության մի ժապավեն, 100—120 միլիմետր լայնությամբ, մինչդեռ, մեր գործարանին հարկավոր է 80 միլիմետր լայնություն ունեցող ժապավեն։ Նշանակում է, մենք օգտագործում ենք ժապավենի ոչ ամբողջ լայնությունը. նրա 40 %-ը ծախսվում է ոչ բուռ նպատակի։

Կամ թե մի օրինակ հենց մեր ցեխից։ Յուրաքանչյուր ամիս մենք ծախսում ենք 120 տոննա մետաղ։ Ամեն ամիս մնացուկները կազմում են մոտ 6–7 տոննա։ Մնացուկներից մենք դետալներ ենք պատրաստում մանկական հեծանիվների համար, պատրաստում ենք բոլտեր, մետաղն օգտագործում ենք ցեխի սարքավորման ընթացիկ նորոգման համար։ Բայց արդյո՞ք մենք օգտագործում ենք ամբողջ մնացուկները։ Ի հարկե, ո՛չ։ Ցեխի ամբողջ կոլեկտիվը պետք է մտածի, թե ի՞նչ կերպ կարելի է ավելի ռացիոնալ ձևով օգտագործել այդ մնացուկները։

Հարցը, սակայն, միայն մնացուկները չեն. հումքի ռացիոնալ օգտագործումն ամենից առաջ նկատի ունի պատրաստի արտադրանքի խոտանի բացակայությունը։

Մինչդեռ մենք շատ լավ գիտենք, թե մեքենայում որքա՜ն մեծ է խոտանն այն բանի հետևանքով, որ որոշ բանվորներ ու վարպետներ անփույթ վերաբերմունք ունեն դեպի գործը։

Անցյալ տարի մեր ցեխը խոտանի պատճառով կրեց 261.000 ռուբլու վնաս։ Դուրս է գալիս, որ ցեխում աշխատող յուրաքանչյուր բանվորին, տարվա ընթացքում միջին հաշվով հասնում է ավելի քան 1000 ռ. խոտանված արտադրանք։ Ճիշտ է, այս տարի դրությունը մի փոքր բարելավվել է, բայց այնուամենայնիվ, փետրվար ամսին խոտանը ցեխում կազմեց 5328 ռուբլի։

Ովքե՞ր են խոտան ստեղծում։ Սահմանված է, որ բանվորուհիները պետք է չարյոնի համեմատ ստուգեն յուրաքանչյուր 5—10-րդ դետալը. բայց, ահա, օպերատոր ընկ. Վոյնովան այդ բանն իր համար պարտադիր չի համարում և դրա համար էլ երկու շաբաթվա ընթացքում նրա ձեռքի տակից դուրս է եկել 49 խոտանված դետալ։

Արդյունաբերության մեջ բոլոր աշխատողների՝ ժողկոմատների, գլխավոր վարչությունների ու ձեռնարկությունների ղեկավարներից սկսած մինչև անմիջա-



կանորեն դազգյահի մոտ աշխատող մարդկանց խնդիրն այն է, որ, ինչպես ասաց ընկ. Մալենկովը, «վերջ դնենք անտնտեսավարությանը՝ սարքավորումն օգտագործելու ասպարեզում, շռայլությանը՝ գործիքների, հումքի, նյութերի, վառելիքի ու էլեկտրաէներգիայի ծախսման մեջ, վերջ դնենք այնպիսի դրությանը, երբ մեր արդյունաբերության մեջ ու տրանսպորտում արտադրական կարողություններն օգտագործվում են ոչ լրիվ»։

Երբ ընկ. Մալենկովը 18-րդ պարտկոնֆերանսում տված իր զեկուցման մեջ մատնանշեց սարքավորման, հումքի, նյութերի, գործիքների պահպանման վատ վիճակը, նա ասաց. «Այդ մասին փաստեր, դուք, ընկերնե՛ր, կարող եք գտնել ձեր մարզի ու քաղաքի ձեռնարկություններում»։ Եվ իրոք, այդպիսի փաստեր, ցավոք սրտի, չափազանց շատ կան ամենուրեք ու այդ թվում նաև մեր գործարանում։

Գործարանի բակում, գարաժի մոտ, բաց երկնքի տակ գոյացել է հին անվակների մի «պահեստ»։ Երեք տարի շարունակ անձրևները լվացել են այդ անվակները, բայց այդ հանգամանքը չի

անհանդստացրել տրանսպորտային բաժնի ղեկավարներին. Նրանք ոչ մի միջոց ձեռք չեն առել այդ անվակալները նորոգելու համար:

Բայց մի կարծեք, թե մեր գործարանում պետական գույքի նկատմամբ անտարբեր մարդիկ կան միայն տրանսպորտային բաժնում: Ինչպե՞ս ենք մենք ինքներս, մեր ավտոմատային ցեխում, պահպանում գործիքները: Գործիքները մեզանում դեռ վերջերս էլ հենց մի գլուխ «կորչում» էին: Այսպես օրինակ, նոյեմբերին, աշխատողների անփութության հետևանքով, փչացել է 178 գայլիկոն, 32 կտրիչ, 19 լայնիչ գայլիկոն, 46 ֆրեզ: Ճիշտ է, այժմ մենք սկսել ենք մի փոքր ավելի խնամքով վերաբերվել դեպի գործիքները: Գործիքների կոտրումը մեզ մոտ այժմ պակասել է. բայց չէ՞ որ հենց փետրվարին անփութության հետևանքով ջարդված 14 ֆրեզներով կարելի էր պատրաստել մոտավորապես 50.000 դետալ: Այս թվի վրա ինքներդ մտածեցեք, ընկերներ, և չմոռանաք մեկ անգամ ևս, թեկուզ կոպիտ կերպով, բազմապատկել այդ թիվը համամիութենական, համապետական մասշտաբով:



Համամիութենական, համապետական մասշտաբի այս միտքն էլ հենց, չպետք է հեռանա մեր բոլորից, որքան էլ փոքր ու աննշան թվա մեր աշխատանքը սոցիալիստական ժողովրդական տնտեսության ամբողջ հսկայական մեխանիզմի համեմատությամբ: Ես կարծում եմ, որ հավաքարարուհի ընկ. Պավլովան, որը բացառիկ հոգատարությամբ մաքրում է ցեխը, հենց այդպե՛ս, տնտեսաբա՛ր է վերաբերվում դեպի գործարանային, այսինքն՝ ժողովրդական գույքը: Ոչ թե մանրուքների հետևից ընկնելով, այլ իսկական բարձր գիտակցականությամբ, իր աշխատանքի ամբողջ պետական նշանակության ըմբռնումով են բացատրվում նրա գործողությունները, երբ նա բծախնդիր ճշտապահությամբ հավաքում է «փալասները», որոնք գործածվում են դազգյահները մաքրելու համար: Ընկ. Պավլովայի նմանները շատ կան և՛ մեր գործարանում և՛ ամբողջ Սովետական Միության մեջ: Դրանք իսկական բոլշևիկներ են, որոնք աչքի են ընկնում իրենց անհաշտությամբ դեպի թերությունները, պահանջկոտությամբ՝ իրենց նկատմամբ և դեպի իրենց ամբողջ աշխատանքը: Նրանց համար պե-

տության շահերը, հայրենիքի շահերն ամեն բանից բարձր են:

Համամիութենական 18-րդ պարտկոնֆերանսը պահանջեց վերացնել արդյունաբերության և տրանսպորտի աշխատանքի մեջ գոյություն ունեցող թերությունները: Կոնֆերանսի որոշումները գործողության ծրագիր են Սովետական երկրի բոլոր աշխատավորների, այդ թվում նաև մեզ համար: Անհրաժեշտ է ճիշտ կազմակերպել սարքավորման, ամեն տեսակ դույքի ու նյութերի հաշվառումը: Անհրաժեշտ է ճիշտ օգտագործել սարքավորումը և տնտեսաբար ծախսել հումքը, նյութերը, վառելիքն ու էլեկտրոէներգիան, տնտեսաբար գործածել գործիքները: Եվ, վերջապես, անհրաժեշտ է մեզ հանձնված նյութական արժեքները պահել կանոնավոր ու լավ վիճակում:

Կոնֆերանսի այս բոլոր որոշումների կատարումը, ինչպես դուք ինքներդ էլ հասկանում եք, ամբողջապես կախված է հենց մեզանից, դեպի աշխատանքը, դեպի պետական բարիքը մեր բարեխիղճ, ազ-



նիվ վերաբերմունքից, բարիք, որը վստահված է մեզ: Եվ մեզանից յուրաքանչյուրը պետք է գործադրի իր բոլոր ուժերը, որպեսզի այդ ժողովրդական բարիքը լիովին օգտագործվի ի բարօրություն մեր հայրենիքի, օգտագործվի նրա պաշտպանական հզորությունն ուժեղացնելու համար, կոմունիզմի կառուցման համար:

---

Ի տ. պատասխանատու խմբագրի՝
Խ. Ս. ԻՍԿԱՆԴԱՐՅԱՆ

